# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 1 | ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. | ՅՈՒՆՈՒԱՐ, 1919 | ՏԱՍԸ ՍԷՆԹ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ԺՈՂՈՎՈՒՐԴ

---

Կրօնական հասկացողութեամբ Եկեղեցի և ժողովուրդ համանիշ բառեր են, վասն զի եկեղեցի կը նշանակէ Քրիստոսի հաւատացողներու բազմութիւն: Բայց սովորութիւն եղած է եկեղեցի կոչել այն շէնքը ուր հաւատացեալք կը հաւաքուին միասնաբար պաշտել զԱստուած և աղօթել: Քրիստոս իր եկեղեցին կազմակերպեց ոչ թէ նիւթերէ առնուած շէնքերով, այլ իր վարդապետութեան հաւատացող մարդկանց բազմութիւնով:

Նոր Տարիի առիթով և «Էջմիածին»ի հրատարակութեան երկրորդ շրջանի առաջին թուով կը փափաքինք մեր եկեղեցասէր ընթերցողներու ուշադրութիւնը հրաւիրել երևոյթի մը վրայ, որ գիտենք դէմ յանդիման կը գնէ եկեղեցի կոչուած շէնքերն, և որուն համար ծախսեր ու զոհողութիւններ ընել կուտայ իրենց:

Քարէ, փայտէ, երկաթէ, մարմարիոնէ շինուած նիւթական եկեղեցին, որ ի ներքուստ կը զարդարուի ոսկիէ, արծաթէ անօթներով, բազմաթիւ լոյսերով ու ջահերով, հոն հաւաքուող ժողովուրդը —բարոյական եկեղեցին— բո՛ւն եկեղեցին կը խորհրդանշէ: Անոր կառուցմանը օգնող և արտաքին շքեղութեան հոգատարութիւն ունեցող անհատները, անհրաժեշտ է, որ նոյն շքեղութիւնը և փայլը ցոլացնեն իրենց կեանքին մէջ, իրենց ներքին, տանին և արտաքին կեանքին մէջ: Ասոնք արծաթի, ոսկիի, գոհարի արժէք ունեցող բարձր կեանքի մը ձգտելու են:

Եկեղեցւոյ հիմերուն մէջ յանուն Մարգարէից և առաքելոց քարեր կը զետեղուին, ու երբ աւարտի անոր շինութիւնը, կ'օծուի մեծահանդէս շրջով ու սրբագործուելով կը նուիրուի այնպիսի անուան մը, որ Քրիստոնէութեան տարածման համար արդիւնալից աշխատութեամբ և կեանքի զոհաբերութեամբ սրբացեր է: Այդ սրբագործութիւնը իր բոլոր խանդավառութեամբ երբեք արժէք պիտի չ'ունենայ, եթէ անոր խորհրդաւորութիւնը չի ճառագայթեր մեր մէջ ու մեր կեանքէն չեն արտացոլար գործեր, որոնք հաճելի ըլլան Աստուծոյ, և եթէ մեր հաւատքը հաստատուած չէ առաքելոց և մարգարէից հաւատքին վրայ:

Հայաստանեայց Եկեղեցւոյ սովորութեան համաձայն մեր մարմնի զանազան մասերը օծուած են: Մկրտութեան պահուն սուրբ իւղով կ'օծենք երախային աչքերը, ճակատը, բերանը, սիրտը, ևն., որ Հոգւոյն Սրբոյ անոր վրայ իջման նշանակն է: Թէ Մովսիսական օրինաց և թէ Քրիստոնէական կրօնի մէջ այս մռօք իւղը գործածուած է: Ելից. Խ.: Տապանակ Ուխտիէն և Իսրայէլացւոց թագաւորներէն սկսեալ մինչև առաքելոց ձեռքով հիւանդներու օծուիլը, որոշ կերպով կը տեսնենք Ս. Գրոց մէջ: —

Սակայն Ս. Միւռոնով օծումն ալ կարևորութենէ զուրկ կը մնայ, եթէ կեանքիդ մէջ չես կատարեր այն յանձնառութիւններդ զորս կրնես աւազանին մէջ մկրտուելու առեն: Երբ երախան աւազանին կը մօտենայ՝ պաշտօնեայն կը հարցնէ.

—Երախայս զի՞նչ խնդրէ:

Երախայրին կողմանէ կնքահայրը փոխանորդաբար կը պատասխանէ.

—Հաւատք, յոյս, սէր:

Մկրտութեան արժէքը և բուն նպատակը այդ երեք առաքինութեանց մէջ կը մարմնաւորի, Հաւատալ ամենասուրբ Երրորդութեան, Յուսալ անոր թագաւորութեան յաւիտենապէս գալուն, և ի վեր քան զամենայն սիրել զԱստուած և զմարդիկ անխտիր: «Այնուհետև չիք խտիր ոչ Հրէի և ոչ հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի, զի ամենեքեան դուք մի էք ի Քրիստոս Յիսուս»: Պօղոս Առաք.: Ուրեմն մենք պէտք է օծուինք այդ հաւատքով, օծուինք այդ յուսով և սիրով:

Եկեղեցւոյ մը շէնքը ճարտարապետական ինչքան հիանալի յօրինուած ալ ունենայ, անոր ամբողջութիւնը ինչ թանկագին իրերէ ալ բաղկանայ, իր բուն նպատակին չի կրնար ծառայել՝ եթէ հոն յաճախող հաւատացեալները հեռի են արտայայտել Եկեղեցւոյ մէջ ուսուցուած Հաւատքի, Յուսոյ և Սիրոյ արդիւնքները: Ճշմարիտ եկեղեցին կազմող թանկագին նիւթերը և զայն կանգուն պահող սիւները, հոն՝ եկեղեցին յաճախող մարդիկ են: Անոնք որքան առատ ըլլան բարի գործերու մէջ, այնքան փառաւոր կըլլայ եկեղեցին: Որքան զօրեղ ու արդիւնաւէտ ըլլայ անոնց հաւատքը, այնքան աւելի հաստատուն կըլլայ եկեղեցւոյն դիրքը:

Եկեղեցւոյն մէջ կը կարդացուին այնպիսի գրքեր ու աղօթքներ, որ տան ներսը չէ երբեք ունենալ այնպիսի ձևեր որոնք գիտենք թէ անբարեկիրթ համարուած են: Նոյն իսկ Եկեղեցւոյ դըրան դուրսի կողմը փողոց նկատելով զգուշանալու է ծխելէ և աղմուկ հանելէ: Իւրաքանչիւր տուն և պաշտօնատեղի, ուր կը յաճախենք, գիտենք թէ վարուելու մասնաւոր կերպ մը կայ հոն, հետևաբար չենք կրնար այդ կերպէն շեղելով մեր ուզած կերպովը շարժիլ: Թևերնուս կը բռնեն ու դուրս կը հանեն մեզ:

Մենք եկեղեցին այնքան վայելչօրէն կը կերտենք, օծմամբ կը սրբագործենք ու տուն Աստուծոյ կ'յայտարարենք: Արդ երբ հոն կը հաւաքուինք գիտնալու ենք թէ Աստուծոյ տան մէջ, Անոր ներկայութեան կը գտնուինք: Հոն ամէն ընթերցուածի, ամէն աղօթքի ու երգի մէջէն Աստուած պիտի խօսի և մենք խորին պատկառանօք ունկնդիր պարտինք ըլլալ առանց ընդմիջելու:

Մենք մեր պաշտօնական և բարեկամական այցելութեանց պահուն որքան մանրակրկիտ կերպով բծախնդիր կըլլանք վարուելակերպի և ընդհանուր կենցաղագիտական սովորութեանց նկատմամբ: Միևնոյն նախանձախնդրութիւնը կը պակսի սակայն եկեղեցւոյ կեանքին մէջ: Հոն ամէն ոք ազատ է իր ուզած տանը մտնել ելլելու և իր ուզած ձևով վարուելու: Մինչդեռ Աստուծոյ ներկայութեան գիտակցութիւնը միայն բաւական պէտք էր ըլլալ, պատկառանք, և հաւատքով աղօթողի մը ճշմարիտ երկիւղածութիւնը և ջերմեռանդութիւնը բղխեցնելու համար մեր անձերէն, մեր ձևերէն: Այն տունն է որ մենք դուրս կուգանք անկէց հոգւով մաքրուած, սրտով մխիթարուած ու միտքով լուսաւորուած:

Քրիստոնէին եկեղեցի յաճախելը պէտք է լուսաւոր ծանօթութեան մը, լուսաւոր հաւատքի մը արդիւնք ըլլայ: Եթէ չենք գիտեր ու գիտնալու ալ ջանք չենք ըներ՝ «Գիտութիւն չունենալնուդ համար ընաջինջ ըլլալու ժողովուրդ մի էք», կ՚ըսէ մարգարէն:

Ո՛չ. մենք ընաջինջ չպիտի ըլլանք, Մարգարէ: Մենք որ դարերու ընթացքին բազում անգամ ազատեր ենք մեր Եկեղեցին իր վրայ պոռթկացող փոթորիկներէն ու կրակներէն: Անոր մասին բաւականաչափ գիտութիւն չունենալով հանդերձ, կրցած ենք պաշտպանել զԱյն երբ մենէ աւելի զօրաւորներ յարձակեր են Անոր վրայ, նոյն իսկ մեր կեանքին գնովը: Որչա՜փ աւելի փառաւոր և պատուաւոր դիրքի մէջ կրնանք դնել մեր Եկեղեցին, երբ ներկայ քաղաքական տագնապներէն ազատելով ունենանք մեր սեպհական Հայրենիքը և երբ մանաւանդ աւելի լայն ծանօթութիւն ունենանք Անոր մասին:

Նիւթական եկեղեցին կառուցանող և անոր հոգատարութիւնը ստանձնող ամէն մէկ անհա[տ] գիտնալու և հաւատալու է, թէ ինք մարդկայի[ն] ճակներէ բաղկացող բարոյական եկեղեցւոյ մէ[ջ] քարը՝ մէկ սիւնն է հաստատուն ու անոր համեմա[տ] ըմբռնէ արժէքը իր կեանքին:

Այս ըմբռնումը հեռի կը պահէ զմեզ չար նախանձէ, մոլեկան կրքերէ, քինախնդիր ըլլալէ բամբասանքէ և այլն: Այս ըմբռնումով կը վերանորոգուի ու կը զօրանայ Եկեղեցին ու մենք ա[լ] մենքս ալ անոր մէջ կրնանք երջանկանալ ու փառաւորել զԱստուած, ամենուս Հայրը:

Այս է Եկեղեցւոյ գոյութեան նպատակը և այ[դ] ուղղութեամբ պարտի դաստիարակուիլ ժողովուրդը անոր մէջ:

* * *

115-66



## ԲԱՑԱՏՐԱԿԱՆ

Հեռուէն ու մօտէն շատեր կը հարցնեն մեզ թէ չպիտի՞ շարունակենք «Էջմիածին»ի հրատարակութիւնը, որուն Յունուարի թիւը քիչ մը ուշացուցինք, մեր կամքէն անկախ պատճառներով։ Ներկայ թիւը հրապարակ կը հանենք մեզ ուղղուած բազմաթիւ հարցումներուն իբր գործնական պատասխան։

Այո՛, պիտի շարունակենք սոյն փոքրիկ ամսաթերթին հրատարակութիւնը այս տարի ևս, եթէ Աստուած կեանք տայ, որ այս միջոցաւ ալ դուզնաքեայ ծառայութիւն մը մատուցանենք իր ամենատուր կամաց, տարածելով իր խօսքը անոնց մէջ որոնք պէտք կըզգան, կը փնտռեն ու կը սիրեն լսել։ Թրքական հարստահարութիւններէն Ամերիկայ ապաստանած մօտաւորապէս հարիւր հազար Հայութեան մէջ ի՛նչքան ցաւալի երևոյթներ կան։ Եկեղեցին հոս ալ կը հալածուի և կը նուաստանայ բոլորովին տարբեր միջոցներով։ Մխիթարական է անշուշտ տեսնել որ փոքր չէ ժողովուրդի այն թիւը որ ճշմարտապէս կը սիրէ Եկեղեցին ու ջերմապէս կը հաւատայ անոր գոյութեան, սակայն այդ սիրոյն ու հաւատքին համապատասխան գործունէութիւն և կազմակերպութիւն կը պակսի իրեն։ Այս պատճառաւ չեն հասնիր բարձր կրթութեամբ օժտուած եկեղեցականներ։ Միթէ այս չէ՞ պատճառը, որ Ամերիկահայ եկեղեցական կեանքին մէջ կամաց կամաց սկսած են ծայր տալ անդր Լեհաստանեան և Նիկոլեան դէպքեր ու դէմքեր։

Ի՞նչ է Փրովիտէնսի մէջ վերջերս գոյութիւն առած հակառակորդութիւնը, եկեղեցական ո՞ր պէտքի համար, հոգևորական ի՞նչ առիթողականութենէ ծագում առաւ ան։ Մենք վստահ ենք թէ անոր հեղինակը եղող խմբակը, և այդ խմբակին գործիք դարձող անձերը, քաջ համոզուած են իրենց արարքին ծիծաղելի և դատապարտելի ըլլալուն, բայց ի՞նչ ընել որ «ոչ է մարդ չգալ գայթակղութեան, բայց վա՜յ մարդուն այնմիկ յոյր ձեռն գայցէ»։

Տարակոյս չունինք թէ պատերազմի դադարման յաջորդող ներկայ տարւոյ մէջ պիտի բացուին այլ ևս ճամբաները, երթևեկութիւնք և հաղորդակցութիւնք ամեն տեղի հետ շուտով կըսկսին։ Ի՞նչ պիտի ըսէ Վեհափառ Կաթողիկոսը երբ տեղեկանայ այս տխուր կացութեան նկատմամբ։ Ի՞նչ պիտի ըսէ այդ ծերունազարդ Հայրապետը, որուն սիրտը արդէն կարեվէր խոցուած է չորս տարիներէ ի վեր հայրենի Եկեղեցեաց և ամեն սրբավայրերու կործանումին, եկեղեցականաց և աշխարհականաց խողխողումին ի տես։ Ի՞նչ պիտի ըլլայ անոր այդ բզքտուած ու ցաւատանջ սիրտը, երբ լսէ թէ հոս այս ազատ ու խաղաղ երկրին մէջ ալ եկեղեցւոյ մէկ մասը բարոյական գահավիժում մը ունեցած է։

Նա արդար պիտի ըլլայ անշուշտ, և իր Հայրապետական գերագոյն իրաւասութեամբ առաջին առթիւ պիտի անօրինէ պարտ ու պատշաճը։ Իցի՜ւ թէ չի յամենար այդ օրը, և եկեղեցին կ՚ազատի այս անիշխանական կացութենէն։

Մարդ կը զարհուրի և ամօթապարտ կըլլայ, երբ կը տեսնէ թէ իր հինաւուրց Քրիստոնէութեամբ և նահատակ Եկեղեցիովը յա՛ր պարծեցող ու թուով հարիւր հազար ժողովուրդ մը չի կրնար իր այդ պարծանքին արդարացնող կրօնական պարբերաթերթ մը ունենալ, ծայրէ ի ծայր Քրիստոնեայ ու ազատ այս երկրին մէջ, ուր կը փթթին կրօնական ու բարոյական հրատարակութիւններ։

Ահա ճիշտ այդ նախանձախնդրութեամբ լեցուած, տարի մը ևս կը շարունակենք «Էջմիածին»ի հրատարակութիւնը, ինչ ալ որ ըլլայ մեր պաշտօնական դիրքը հանդէպ Եկեղեցւոյ։ Մեզի համար քիչերուն համակրանքը աւելի քաջալերական է, քան թէ շատերուն հակակրանքը վհատեցնող։

Այս առթիւ սրտագին կը մաղթենք, որ ինչպէս անցեալ տարի աշխարհահաղորդ պատերազմին վերջանալը տեսանք, ներկային մէջ ալ մեր Հայրենիքին համար փայլուն վիճակ մը ստեղծուի, ճամբաները բացուին, ազատ երթևեկութիւնք ըսկսին, ու բախտ ունենանք հետզհետէ բարի լուրեր արձանագրելու։

## ԵԴԵՄԻ ԵԿԵՂԵՑԻՆ

Ներկայ շրջանի համար Հոգաբարձու ընտրուած են Տեարք՝ Մ. Թոփմանեան՝ Ատենապետ, Յ. Նազարէթեան՝ Ատենադպիր, Ս. Ձէրէչէթեան՝ Գանձապահ, Ս. Առաքելեան՝ և Խ. Կարապետեան։ Ա. Պետոյեան՝ Ատենապետ Ընդհ. Ժողովոյ, Ա. Սիմոնեան՝ Ատենադպիր։

Կը մաղթենք որ Եդեմի մեր պատուական ժողովուրդը հովիւով մըն ալ օժտէ իր Եկեղեցին։

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR
Entered at the postoffice at Fresno as second class mail matter
VOL. II, N. 2, JAN., 1919 PRICE 10 CENTS

## ԾՆՈՒՆԴԸ

Ի՞նչ արդիւնք կ'ունենայ տարին անգամ մը Քրիստոսի ծնունդը այնքան հանդիսաւորութեամբ տօնելնիս: Բոլոր յիշատակութիւնները որոնք կը կատարուին, երկու գլխաւոր նպատակ ունին. նախ՝ որպէս զի այդ յիշատակները հանդիսաւորողները յիշեն ու պահեն միտքերնին հին ժամանակներու վերաբերեալ այն դէպքերն ու դէմքերը որոնք ազդեցութիւն մը թողած են աշխարհի վրայ, և դէպի լաւը փոխած են ճակատագիրը ընդհանուր մարդկութեան կամ մասնաւոր ազգի մը:

Այս խորհրդածութենէն առաջնորդուելով կը համոզուինք, որ Քրիստոսի ծննդեան նման դէպքի մը վրայ, և Քրիստոսի նման դէմքի մը վրայ տարին անգամ մը միայն անդրադառնալ ու հանդիսաւորել զայն շարականներով, տաղերով ու քարոզով մը, ոչ միայն բաւական չէ, այլ և այդքանը զՔրիստոս հաճեցնելու համար միայն սարքուած, սովորութիւն մը կատարելու ստիպողականութենէն չի կարենալ խուսափելնուս համար եղած բան մըն է:

Քրիստոսի Ծնունդը և անոր կեանքին վերաբերեալ բոլոր դէպքերը, որոնք պատմուած են չորս անձերու կողմանէ խմբագրուած աւետարան անուն չորս համանման գրքերու մէջ, մեծութեան և տիրապետութեան ոչինչ ունին իրենց մէջ: Ընդհակառակը՝ փոքրութիւններու և խեղճութիւններու միայն կը հանդիպինք անոնց մէջ, երբ իբրև պարզ պատմութիւն կարդալով դարձնենք թերթերը և աւարտենք բոլոր գրքերը:

Ի՞նչ մեծութիւն կայ հոն, ուր աղքատիկ աղջիկ մը զաւակ մը ծնանելով գրգլեակներու մէջ կը փաթթէ ու կենդանիներու մսուրին մէջ կը հանգչեցնէ: Իրաւ է թէ անոր համար ըսուած էր թէ մեծ պիտի ըլլայ ան, սակայն որչափ ատեն որ մընաց նա աշխարհի վրայ, մեծութեան ոչինչ ունեցաւ:

Հետևինք իր կեանքին քանի մը գլխաւոր դէպքերուն:

Տեսէ՛ք, տասներկու տարեկան Յիսուսը տաճարին մէջ, որ կը վիճաբանի քանի մը Հրեայ քահանաներու հետ: Ա՞յս է մեծութիւնը:

Դիտեցէք զինքը Յորդանան գետին մէջ, երբ երեսուն տարեկան էր. կը լուացուի Յովհաննէս Մկրտչի ձեռքով ու կը քաշուի անապատ, ուր միայնակ կը մնայ քառասուն օր անօթի և ծարաւ: Ո՞ւր է հոս մեծութիւնը:

Մտնենք այն մարդոց խումբին մէջ, որոնք մերթ Գալիլիոյ ծովեզրը, մերթ «Երանութեան» կոչուած լերան բարձունքը խռնուած կ'ունկնդրէին իր պարզուկ ու անսեթևեթ խօսքերուն: Ի՞նչ մեծութիւն կայ այդ ամենահասարակ բացատրութեանց մէջ. չէ՞ որ աշխարհի մեծերն անոնք են, որ բարձր իմաստով կը խօսին, խրթին ոճերով կը հիւսեն ու կը ճոխացնեն իրենց բացատրութիւնները:

Եթէ կ'ուզէք խաչին վրայ ալ դիտեցէք զինքը: Ի՞նչ չուառ, ի՞նչ կարճ ճամբայ, մսուրէն մինչև Գողգոթա: Այդ սոսկալի տագնապին մէջ, մէկը քացախ կը հրամցնէ փոխան ջուրի, ուրիշ մը կը հայհոյէ, մէկ ուրիշը տեղ մը բարձրացնելով կողը կը խոցէ: Ու ասոր համար ըսուած է թէ մեծ պիտի ըլլայ, բոլոր աշխարհին փրկիչը պիտի ըլլայ:

Բայց «ԽՈՐՀՈՒՐԴ ՄԵԾ ԵՒ ՍՔԱՆՉԵԼԻ»:

Ահա միակ բացատրութիւնը որ կը յարմարի այդ պզտիկութեանց մէջ ծածկուած մեծութեան, այդ անճառ, հասարակ համարուած խօսքերուն ու դէպքերուն:

Իմաստասիրական դպրոցի աշակերտներ, աշխարհահռչակ հռետորներ նախ քան զՔրիստոս և յետ նորա շա՜տ, որոնք բառոյախօսութեան վրայ անհաշիւ հատորներ են լեցուցած, բայց անոնցմէ ոչ մէկը կրցած է ու պիտի կրնայ բռնել այն դըրքերուն տեղը որոնց մէջ այնքան պարզօրէն արձանագրուած են Յիսուսի պատմութիւնը և Անոր խօսքերը: Յիսուսի և Աւետարանի նման մեծութիւններ աշխարհ անգամ մըն ալ չպիտի ծնանի:

«Յիսուս Քրիստոս, երէկ և այսօր նոյն և յաւիտեան»:

Իրենց անունին վրայ մեծ մակդիրը կրող բազում թագակիրներ զինու զօրութեամբ մաքառած են տիրել աշխարհի, տիրել մարդոց սրտերուն, բայց անոնք բոլորն ալ ապառաժներու բաղխող ալիքներուն նման խորտակուած են։ Մսուրին մէջ ծնող ու խաչին վրայ մեռնող Աստուածորդիէն ու անոր տուած բարոյական դասերէն աւելին պէտք չունի աշխարհ։

Հայաստանեայց Եկեղեցին Յիսուսի ծննդեան տօնով անոր պարզ յիշատակութիւնը չէ որ կը կատարէ, անոր խանձարուրը, աղքատիկ վիճակը միայն չէ որ ցոյց կուտայ մեզի, հապա այդ մեծ ու սքանչելի խորհուրդը, մեծութիւն մը բարոյական խորունկ՝ բայց վճիտ գիտակցութեամբ ըմբռնուած։

Մեծութիւնը ոչ տարօրինակութեան մէջ է, ոչ արտաքոյ կարգի կազմուածքի և ոչ ալ գերազանց ոյժի։ Իրական մեծութիւններ ըլլալէ շատ հեռի են ճոխութիւններ և նիւթական որևիցէ առաւելութիւններ։

Պզտիկութիւն էր թշուառին մօտենալ, Քրիստոս անոնց հետ ապրեցաւ։ Օրինազանցութիւն էր Շաբաթ օրը բարիք գործել. Յիսուս անոր մէջ խորհրդաւորեց իր մեծութիւնը։ Մեծութիւն էր ատել օտարը. Բարի Սամարացւոյն առակով հիմէն տապալեց նա այդ այլանդակ ըմբռնումը։

Յիսուսի խեղճուկ մսուրին քովը կեցած ժամանակդ միտքդ բեր որ այսօր 400 միլիոնէ աւելի մարդոց սրտերը կրցած է գրաւել Ան իր պզտիկութիւնովը միայն։ Ո՜վ խորհուրդ մեծ և սքանչելի։ Ան կուզէ որ իր անուանակիրներն ալ այդ կերպով ըլլան մեծ։ «Որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի»։

Լայնցո՛ւր միտքդ Քրիստոնէական ըմբռնումներով. ամբարէ՛ անոր մէջ բարին ու օգտակարը, վսեմն ու ճշմարիտը։ Թող սիրտդ ըլլայ ծննդավայրը բարի փափաքներու, ներելու, սիրելու, ծառայելու և զոհուելու խիկ պատրաստ։ Ծննդեան Տօնի հանդիսութեանց մասնակցելու կերպը այ՛ս է։ Իբր Քրիստոնեայ ապրելու միակ միջոցը ա՛յս է։

Վերածնելիք Հայաստանը, վերածնեալ Հայերու կ՚սպասէ. անոնցմէ ըլլանք դուն և ես։



## ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻ

Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ մէջ աննախընթաց հանդիսաւորութեամբ տօնուեցաւ Քրիստոսի Ս. Ծննդեան տօնը։ Ճրագալոյցի երեկոյեան պատարագեց Եկեղեցւոյն հովիւը։

Իսկ Կիրակի առաւօտ Ֆրէզնոյի և հեռաւոր գիւղերու բազմազան Հայութիւնը, երկու հազարի չափ բազմութիւն մը, խիտ առ խիտ լեցուցած էր Եկեղեցւոյն ներսը և դուրսը։ Օրուան խորհուրդէն ծագում առնող հրաշալի Փառք ի Բարձունս Աստուծոյ միաբերան երգեցին դպիրք և ժողովուրդ։ Ս. Պատարագը մատոյց Գեր. Բարգէն Եպիսկոպոս։ Սարկաւագութեան պաշտօնը կատարեց Տ. Թէոդորոս քահանայ։ Պ. Փ. Գալֆայեանի երկսեռ ու երկձայն խումբը ներդաշնակօրէն երգարանեց պատարագի յատուկ հոգեցունց երգերը։

— Պատարագիչ Սրբազանը, որուն պատշաճ իր յուզիչ քարոզով խորունկ տպաւորութիւն թողուց ունկնդիրներուն վրայ։ Բացատրեց «Փառք ի Բարձունս»ի առաջին պարբերութեան նշանակութիւնը. պարզեց համաշխարհային խաղաղութեան պայմանները՝ անհատէն սկսելով դէպի ազգերը, դէպի ամբողջ մարդկութիւնը, և երախտագիտութեամբ յիշեց Նախագահ Ուիլսընի այս ուղղութեամբ ցոյց տուած իմաստուն աշխատանքը։ Հայաստանի վերաշինութեան և հայ դժբաղդներն հոգալու մեր պարտականութեանց ակնարկելով՝ ազդու կերպով կոչ ըրաւ, տալու և զոհելու տարբերութիւնները բացատրեց և եզրակացուց թէ մինչև հիմայ տուինք, իսկ այժմ պիտի զոհենք։ —

Կը մաղթենք որ խօսուած քարոզները պարարտ հողի վրայ ինկած սերմի նման արդիւնաւոր ըլլան։

Ջրօրհնեաց արարողութենէն անմիջապէս առաջ եկեղեցւոյ հովիւը իր ծանուցումներու շարքին ծանօթացուց Օր. Աւշալոյս Մարտիկեանը, որ մասնաւոր կարգադրութեամբ մը ներկայ էր դասին մէջ։ Ժողովուրդը կը փափաքէր տեսնել Հայաստանի գեր-դժոխային արհաւիրքներու այս կենդանի վկան։ Պ. Պ. Գույումճեան Խաչի կնքահայրութիւնը ստանձնելով՝ իր կողմանէ փոխանորդ կարգեց Արշալոյսը, որ շապիկ հագնելով իր կուրծքին վրայ հանգչեցուց ջուրէն հանուած Խաչը որուն համար այնքան տառապած էր։ Ի վեր-

ջոյ՝ ժողովուրդէն յայտնուած փափաքի մը վրայ՝ հաւաքական կնքահայրութիւն արձանագրուելով՝ Արշալոյս կատարեց այդ պաշտօնը գրեթէ բոլորին կողմանէ։

Ու երբ ամէն բան վերջացաւ, Հայաստանի դուստրը հետեւեալ խօսքերն արտասանեց.

«Չորս տարիներէ ի վեր կարդացիք ու լսեցիք այն դժոխային դէպքերու մասին, որոնք տեղի ունեցան մեր Հայրենի աշխարհին մէջ։ Ձեր լսած ու կարդացածներուն ականատես վկան եմ ես։ Ո՛չ միայն վկան, այլ և ես ինքս ալ ենթակայ եղած եմ բոլոր այն գազանային ոճիրներուն, որոնք Թուրքերու և Քիւրտերու կողմանէ գործադրուեցան մեր աշխարհին մէջ, մեր եկեղեցիներուն վրայ, մեր ժողովուրդին վրայ, մեր մայրերուն ու քոյրերուն վրայ։



Օր. Արշալոյս Մարտիկեան

Եթէ ձեր կարդացած ու լսածները անհաւատալի թուեցան ձեզի, Աստուած՝ որուն խորհուրդներուն չենք կրնար թափանցել, իր հրաշքներէն մին ցոյց տուաւ հարիւր հազարաւոր դահերուն մէջէն ազատ պահելով ու հոս բերելով ինծ նման խեղճ աղջիկ մը, Չմշկածակցի Արշալոյս Մարտիկեան, քեռորդին՝ ձեր ամենուդ ծանօթ Տոքթ. Ա. Մ. Լօնկի։

«Երբ տեղահանութեան սարսափներն սկսան, մեր տանը մէջ կային շատ թանկագին առարկաներ, բայց ես անոնց մէջէն մէկ բան միայն սիրեցի վերցնել՝ այս Սուրբ Աւետարանը, և պահեցի իմ քովս մինչև վերջը, բոլոր ձամբորդութեանս մէջ, Չմշկածակէն Արաբկիր, Կիւմիշխանէն, Խարբերդ, Տիգրանակերտ և Տէրսիմ. յետոյ Երզնկա, Էրզրում, Կարս, Երեւան, Պարս, Թիֆլիս, Մոսկուա, Բետրոկրատ և Ծովէն Նորվէկիոյ ճամբով եկայ Ամերիկայ։

«Ամբողջ Ամերիկան ցնցեց իմ պատմութիւնս, որ շարժական պատկերներու վերածուելով ցոյց պիտի տրուի բոլոր աշխարհի։

«Պատմութիւնն է այն Հայաստանի, որ այնքան անգութ կերպով աւերեցին, քանդեցին ու մոխիրի վերածեցին։ Ժողովուրդը չարչարեցին ու խաչեցին Թուրքը, Քիւրտն ու Գերմանը։ Այդ խաչելութեան պատմութիւնը ձեր գիտցածէն շատ աւելի ահաւելի է։ Հաւատացէ՛ք դուք տար, և ձեր հաւատքին ապացոյցը, թանկագին Հայեր, թող ան ըլլայ, որ դուք լայն բանաք նախ ձեր քսակները հայկական կարօտութեանց հանդէպ, անապատներուն մէջ ձեր օգնութեան սպասող թշուառներուն համար, կիներուն և աղջիկներուն համար, հոս հոն ցրուած որբերուն համար։

«Ու երկրորդ ձեր հայրենասիրական զգացումները լաւ սրեցէ՛ք ու զինեցէք ապագայ վրէժխնդրութեան համար։ Այս երկու պայմաններով միայն պիտի ապրին Հայն ու Հայաստանը։ Ապրին պարտաճանաչ Հայերը. ապրի թող միշտ ապրի Հայաստան»։

## ԹԵԼԱԴՐԱԿԱՆ

Կը սիրե՞ս «Էջմիածին»ը. պէտք կա՞յ այսպիսի հրատարակութեան մը։

Ի՞նչ տպաւորութիւն թողին «Էջմիածին»ի անցեալ տարուան թիւերը քու վրադ։

Շատ ուրախ պիտի ըլլանք, եթէ տպաւորութիւնդ և ունեցած թելադրութիւններդ բարի ըլլաս հաղորդելու մեզի։

Այդ ընելով դուն ալ հանրութեան ծառայած կըլլաս չափով մը ու սատարած թերթիս զարգացումին։ Այդ կերպով մեր գործն ալ կը դիւրանայ և աւելի հետաքրքրաշարժ կը դառնայ։

## ՄԵԾ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋԸ

Մի երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ Հայր ձեր, տալ զարքայութիւն, վաճառեցէք զինչս ձեր եւ տուք ողորմութիւն ։

* * *

*Քրիստոսի այս խօսքերը բառական ճշմարտութեամբ հիմա է որ ցոյց կուտան իրենց զօրութիւնը։ Փոքրիկ հօտը, ահա մը Հայութիւնն է անիկա որ այսօր ապաստել կսկսի գտնել հեռու իր կրած հալածանքներէն, ու վերջերս ալ իր բարձրացած Գողգոթայի կատարմանէն։ Ա՛լ պիտի կենդանանայ ան, ա՛լ յարութիւն պիտի առնէ, ա՛լ պիտի ապրի, ա՛լ Հայրը հաճեցաւ անոր տալ արքայութիւնը, իր գեղեցիկ, փառաւոր հայրենիքը, դրախտավայր Հայաստանը, դիւցազանց երկիրը, հրաշալեաց հանդիսարանը։*

*Ալ մի՛ երկնչիր, ալ մի՛ վախնար, միայն գիտցիր վաճառել ինչքդ եւ տալ աղքատաց։ Այս է վերջին պայմանը։*

*Վաճառէ՛, մէկդի նետէ անձնասիրութեան ագահութեան եւ ժլատութեան նման յոռի միտումներդ, ծախէ՛, իրաց թօթափէ զանոնք բոլորը եւ ունեցածէդ բաժին հանէ յօժար սրտով եւ զուարթ երեսօք, այն հարիւր հազարաւոր Թշուառներուն, որոնք այս ցուրտ ձմեռին մերկ ու սովալլուկ տանջուելով, մահ մահ աղաղակելով կը սառին։ Դուն ի՞նչ կըզգաս այս տողերը կարդացած ժամանակդ։*

*Հայրենիք ունենալու այն ժամանակ միայն արժանի պիտի ըլլանք, երբ գիտնանք լսել ու կատարել Աւետարանի ճիշտ այս ժամանակին համար եւ ուղղակի մեզի համար տրուած պատգամը։*

*Հայ Ազգային Միութեան կողմանէ որոշուած մէկ միլիոն տոլարի հանգանակութեան իր ուշացուցած բաժինը պիտի տայ Քալիֆօրնիոյ Հայութիւնը։ Ժամանակն է որ ցոյց տանք թէ երգն ու ծափը, ճառն ու քարոզը արժէք չունին բնաւ եթէ քսակիդ բերանը լայն բանալով առատօրէն տալ չես ուզեր։ Եւ ո՞ւմ պիտի տանք. մեր հարազատներուն, մեր եղբայրներուն ու քոյրերուն, հայրերուն ու մայրերուն, որոնք երէկ հարուստ ու երջանիկ, իսկ այսօր անապատները քշուած, հազիւ ցնցոտիներով ծածկուած, կենդանեաց աղբերուն մէջ գարիի հատեր կը փնտռեն։*

*Մի՛ մոռնար այս պատկերը երբ Հայ Ազգ. Միութեան աշխատաւորները քեզի դիմեն, յիշէ այն ատեն այդ իրողութիւնը եւ Աւետարանի խօսքերը՝ «Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն. վաճառեցէք զինչս ձեր եւ տուք ողորմութիւն»։*

*Յիշէ՛ ասոնք եւ բաց այնմ տուր քու տուրքդ։*

---

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ անդամական Ընդհ. Ժողովը պիտի գումարուի Յունուար 26ի Կիրակի կէսօրէն վերջ ժամը ճիշտ 2ին, Ս. Եկեղեցւոյ մէջ, օրակարգի խնդիր ունենալով հետեւեալները.*

*Ա. Նախորդ ժողովոյ ատենագրութեան վաւերացումը։*

*Բ. Տեղեկագիր եւ հաշուետուութիւն 1918 շրջանի Հոգաբարձութեան։*

*Գ. Ընտրութիւն Ընդհ. Ժողովոյ Դիւանի։*

*Դ. Ընտրութիւն Հոգաբարձութեան 1918 շրջանի դադարեալ անդամոց։*

*Ե. Հրաժարագիր Եկեղեցւոյ Հովիւ Հօր, Գեր. Վարդան Ծ. Վ. Գասպարեանի։*

*Զ. Պիւտճէի որոշում 1919ի շրջանին։*

*Է. Նոր խնդիրներ եւ առաջարկներ (եթէ ժամանակ ըլլայ)։*

*Օրակարգի այս կարեւոր խնդիրներն ինքնին բաւական են պարտադրելու Ս. Եկեղեցւոյս նախանձախնդիր անդամներուն՝ ներկայ գտնուելու անպայման եւ որոշեալ ժամանակին որպէս զի կարելի ըլլայ՝ այդ կարճ ժամանակին մէջ կարգադրելու պատշաճ օրինաւորութեամբ վերոյիշեալ խնդիրները։*

*Անոնք որ բանաւոր պատճառով մը ներկայ չը պիտի ըլլան, իրենց քուէն պահարանի մէջ դնելով եւ անուններնին այդ պահարանին վրայ գրելէ ետք, ուրիշ պահարանի մը մէջ դնեն ու ղրկեն Ընդհ. Ժողովոյ Դիւանին կամ Հոգաբարձութեան, Փ. Օ. Պոքս 290 եւ կամ նոյն օրը եկեղեցին։*

*Վերստին կոչում կընեմք ձեր պարտաճանաչութեան եւ ճշդապահութեան։*

*Մնամք յարգանօք*
*Դիւան Ընդհանուր Ժողովոյ*

*Ատենադպիր — Ատենապետ*
*Վ. Ա. Նշկեան — Յ. Մ. Նշկեան*



## ԼՈՍ ԱՆՃԸԼԸՍԻ ԵԿԵՂԵՑԻ

Լօս Անճըլըսի Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը ընտրուած է Յունուար 5ին: Ս. Ծննդեան Տօնը հոն ալ կատարուած է մեծ հանդիսաւորութեամբ: Հոգ. Տ. Առամ քահանայ մատուցած է Ս. Պատարագ և խօսած է աւուր պատշաճի շինիչ քարոզ մը:

Նոյն երեկոյ Տ. Հայրը յատուկ հրաւէրով ներկայ եղած ու բանախօսութիւն մը ըրած է «Էմմանուէլ Փրիսպիթէրիըն» Եկեղեցւոյն մէջ ու պարագային յարմար աղօթեր է, եկեղեցական տարազով:

Թէ բանախօսութեան և թէ աղօթքին միջոցաւ նա Հայաստանի և Հայ դատին վրայ դարձուցած է եկեղեցւոյն մէջ հաւաքուած երեք հազարէ աւելի բազմութեան ուշադրութիւնը:

Մկրտութիւն

Մ. Էթմէքճեանի երախան՝ Մարտիրոս
Պ. Սիմոնեանի երախան՝ Արմէնուհի
Ս. Շաթրեանի երախան՝ Սաթենիկ
Ս. Շաթրեանի՝ երախան՝ Խաչատուր
Յ. Մարտիրոսեանի երախան՝ Հայկանուշ

Մահագրութիւն

Գասպար Յարութիւնեան, Դեկտեմբեր 7
Տիկ. Մարգրիտ Գազանճեան, » 14
Նազար Զաքոյեան « 14
Յովհաննէս Շահգալէեան, « 16
Տիկին Ագնիւ Անթոյեան, « 31
Տիկին Մարիամ Քէշիշեան, « 31
Կարապետ Սրապեան, Յունուար 3
Տիկին Թագուհի Թաշճեան « 6
Տիկին Ճուհար Մխճեան, « 7

* * *

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հոգաբարձութիւնս հրապարակաւ կը յայտնէ իր խորին շնորհակալութիւնը բոլոր անոնց որոնք Ս. Ծննդեան Տօնին իրենց առատ նուիրատուութիւնով նպաստեցին Եկեղեցւոյս պայծառութեան, Պաղեստինի որբերուն: Այս գումարը յանձնուեցաւ Հ. Բ. Ը. Միութեան իր նպատակին հասցնելու:

—Մ. Պալեան ոսկի շքանշան մը նուէր ստացաւ Նիւ Եորք Լայֆ ապահովագրական ընկերութեան ինչպէս նաև Եկեղեցասէր Տիկնանց Միութեան, որ իր գործակցութեամբ աջակից եղաւ մեր աշխատութեան:

Այս առթիւ կը խնդրենք որ Իւղագին խոստացողները բարի ըլլան շուտցնել իրենց վճարումները: Ի Դիմաց Հոգաբարձութեան

Ատենապետ Յ. ՌԸՍՏԻԿԵԱՆ — Ատենադպիր Մ. ԽՕԼԼԻԿԵԱՆ

## ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎՈՒԻՆ

* * *

Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:

Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:

Երբ գիտես թէ խռովեալներ կան:

Երբ գիտես թէ նորեկ կայ:

Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—
—Թէլէֆոն 4138- W—

ԷՋՄԻԱԾԻՆ
Կրօնա-Բարոյական Ամսաթերթ
Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար
Նամակ, ծրար ևն. ղրկուելու են վարի հասցէով: Բաժանորդագինը կանխիկ է:
ՎԱՐԴԱՆ Ծ. Վ. ԳԱՍՊԱՐԵԱՆ,
Փօսթ Օֆիս Պօքս 290, Ֆրէզնօ: